Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 4 ՓԵՏՐՎԱՐ 1947

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ» ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 33—86։

---

## ԶԱՅՆ ՏԱՆՔ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ԵՎ ԱՆԿՈՒՍԱԿՑԱԿԱՆՆԵՐԻ ՍՏԱԼԻՆՅԱՆ ԲԼՈԿԻ ԹԵԿՆԱԾՈՒՆԵՐԻ ՕԳՏԻՆ

*Մոտենում է Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների օրը՝ 1947 թվականի փետրվարի 9-ը։*

*Այդ նշանակալից օրը Սովետական Հայաստանի քաղաքացիները՝ բանվորները, կոլխոզնիկները, ինտելիգենցիան միահամուռ կերպով և բուռն խանդավառությամբ կմոտենան քվեատուփերին, աշխարհում ամենադեմոկրատական ընտրական սիստեմի հիման վրա կենսագործելու սովետական քաղաքացու իրենց վեհ իրավունքը— ընտրելու Ռեսպուբլիկայի պետական իշխանության գերագույն օրգանում իրենց ներկայացուցիչներին։*

*Սովետական Հայաստանի աշխատավորներն իրենց գերագույն օրգանի ընտրությունները դիմավորում են պատմական նոր իրա-*

դրության մեջ, Երբ Հայրենական Մեծ պատերազմի հաղթական ավարտումից հետո մեր ողջ Սովետական Երկիրը, այդ թվում նաև նրա բաղկացուցիչ մասը կազմող Սովետական Հայաստանը նորից ձեռնամուխ է եղել խաղաղ շինարարության, ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման Ստալինյան նոր հնգամյակի հոյակապ խնդիրների կենսագործմանը։

Նոր հնգամյակում տնտեսության և կուլտուրայի բուռն ծաղկման փայլուն հեռանկարներ են բացվում Սովետական Հայաստանի առջև։ Մինչև հնգամյակի վերջը քառապատկվելու է սինթետիկ կաուչուկի արտադրությունը, կրկնապատկվելու է կաուստիկ սոդայի արտադրությունը, համամիութենական նշանակություն ունեցող մեր ձեռնարկությունները տալու են մեծ քանակությամբ ավտոանվակալներ, հանքային պարարտանյութեր, մետաղահատիչ դազգահներ, ցեմենտ, ապակի, շաքար, ալումին։ Լիովին շահագործման են հանձնվելու կաբելի, հիդրոտուրբինների, ժամացույցի և այլ գործարաններ։ Ավելի քան կրկնապատկվելու է մնդի և մսի-կաթի արդյունաբերության արտադրանքը։



Գյուղատնտեսական մթերքների արտադրությունը Ռեսպուբլիկայում աճելու է 75 տոկոսով, ստեղծվելու է հումքի հարուստ բազա շաքարի և ծխախոտի արդյունաբերության համար, ոռոգվող տարածությունները ընդարձակվելու են 23,5 հազ. հեկտարով, յուրացվելու են տասնյակ հազարավոր հեկտար նոր հողեր։

Մեծ չափերով զարգանալու են հնգամյակում ժողովրդական կրթությունն ու առողջապահությունը։ Հնգամյակի վերջում դպրոցների թիվը հասցվելու է 1155-ի՝ 288 հազար աշակերտությամբ, բարձրագույն դպրոցները տալու են 7000 մասնագետ, յուրաքանչյուր շրջկենտրոն ունենալու է Կուլտուրայի տուն, յուրաքանչյուր գյուղ՝ ակումբ կամ գրադարան։

Ռեսպուբլիկայում մշակվելու է 1,8 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրոէներգիա։

Այս հոյակապ խնդիրների լուծման մեջ անչափ մեծ է ժողովրդական ընտրյալների՝ մեր Ռեսպուբլիկայի պետական իշխանության գերագույն օրգանի դեպուտատների դերը։ Ահա թե ինչու բոլշևիկների պարտիան, ընտրողները այդպես ուշադիր և

լրջությամբ են մոտենում դեպուտատության թեկնածուների առաջադրմանը։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի առաջիկա ընտրություններում բոլշևիկյան պարտիան կրկին հանդես է գալիս անպարտիականների հետ բլոկ կազմած։ Կոմունիստները և անպարտիականները համատեղ առաջադրեցին իրենց անխորտակելի բլոկի թեկնածուներին, համատեղ էին քննարկում այդ թեկնածությունները ընտրողների նախընտրական բազմամարդ ժողովներում և համատեղ էլ ընտրությունների օրը կգնան դեպի քվեատուփերը, միահամուռ կերպով ձայն տալու իրենց բլոկի թեկնածուներին, լավագույններից լավագույններին։

Իբրև կոմունիստների և անպարտիականների բլոկի առաջին համաժողովրդական թեկնածու՝ բոլոր միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաներում, այդ թվում նաև Հայկական ՍՍՌ-ում ընտրողները միահամուռ առաջադրեցին Լենինի գործի մեծ շարունակող, ժողովրդի հանճարեղ առաջնորդ, հայր և ուսուցիչ հարազատ Ստալինին։

Ընկեր Ստալինի անվան հետ է կապված այն ամենը, ինչ վեհ է ու գեղեցիկ, ինչով իրավամբ հպարտանում են սովետական



ժողովուրդները։ Ստալինի անվան հետ է կապված մեր երկրի հզոր սոցիալիստական ինդուստրիայի ստեղծումն ու զարգացումը, կոլխոզային կարգերի հաղթանակը, սովետական գիտության ու արվեստի բուռն ծաղկումը, ՍՍՌՄ ժողովուրդների անխորտակելի մեծ բարեկամությունը, աշխարհում ամենադեմոկրատական Կոնստիտուցիայի ստեղծումը։

Ընկեր Ստալինը փրկեց Սովետական Միության ժողովուրդներին, այդ թվում՝ հայ ժողովրդին ֆաշիստական ստրկության սպառնալիքից, կազմակերպեց նրանց պայքարը ֆաշիստական զավթիչների դեմ, հույս ու հավատ ներշնչելով պայքարի ամենածանր րոպեներին։ Ընկեր Ստալինի զորավարական հանճարով Սովետական Բանակի զորագնդերը ձեռք բերին համաշխարհային պատմական մեծագույն հաղթանակը գերմանական զավթիչների ու ճապոնական իմպերիալիստների դեմ։

Ընկեր Ստալինի անվան հետ է կապված հայ ժողովրդի և նրա պետականության վերածնունդը։

Ընկեր Ստալինի անվան հետ է կապված հայ ժողովրդի կյանքում նշանավոր իրա-

դարձությունը— ամբողջ աշխարհով մեկ
ցրված հայության վերադարձը հայրենիք՝ Սո-
վետական Հայաստան,— հայ ժողովրդի նը-
վիրական իղձերի կենսագործումը։
Եվ երախտագետ հայ ժողովուրդն իր
նախընտրական ժողովներում միահամուռ
կերպով առաջադրեց իր փրկարարի, իր նվի-
րական իղձերի կենսագործման հեղինակի—
ընկեր Ստալինի թեկնածությունը։
Ընկեր Ստալինի օգտին քվեարկե-
լու մեծ պատիվը վիճակվել է Երևան
քաղաքի Ստալինյան ռայոնի № 1 գործարա-
նային ընտրական օկրուգի ընտրողներին,
որոնց քվեն կլինի ամբողջ հայ ժողովրդի
ձայնը հօգուտ մեծ առաջնորդի — նրա,
ով մեզ տանում է հաղթանակից հաղթա-
նակ, նրա, ով մեր երջանկության աղբյուրն
է, մեր լուսաշող ապագայի կերտողը։
Հայ ժողովուրդը միահամուռ կերպով Հայ-
կական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտա-
տության թեկնածու է առաջադրել նաև ընկեր
Ստալինի մերձավորագույն զինակիցներ ընկ.
Վ. Մ. Մոլոտովին և ընկ. Ա. Ի. Միկոյանին։
Երևան քաղաքի Մոլոտովյան ռայոնի № 17



Օրջոնիկիձեի ընտրական օկրուգի ընտրող-
ներն իրենց նախընտրական ժողովում կոչ
արին միահամուռ ձայն տալ սիրելի առաջ-
նորդ ընկեր Ստալինի մերձավորագույն զի-
նակից, Սոցիալիստական պետության ստեղծ-
ման ու ամրապնդման, սոցիալիզմի հաղթա-
նակի գործի մեծ մարտիկ, սովետական ար-
տաքին քաղաքականության ղեկավար, հայ
ժողովրդի լավագույն բարեկամ Վյաչեսլավ
Միխայլովիչ Մոլոտովի օգտին։
Հայրենական պատերազմի տարիներին և
հետպատերազմյան ժամանակաշրջանում
ընկ. Մոլոտովը անշեղորեն կիրառում է
ստալինյան իմաստուն արտաքին քաղաքա-
կանությունը, անդուլ կերպով պայքարելով
մեր երկրի շահերի համար՝ միջազգային աս-
պարեզում, պաշտպանելով խաղաղության
գործը ամբողջ աշխարհում։
Երևան քաղաքի Կիրովյան ռայոնի № 48
Ալումինշինի ընտրական օկրուգում դեպու-
տատության թեկնածու է գրանցված հայ
ժողովրդի արժանավոր զավակ, մեծ Ստալինի
մերձավորագույն զինակից, բոլշևիկյան
պարտիայի և Սովետական պետության ակա-
նավոր գործիչ ընկ. Անաստաս Իվանովիչ
Միկոյանը, որն իր բոլոր ուժերը նվիրում է

հանում մեր Հայրենիքի ծաղկման, նրա հզորության ամրապնդման, աշխատավորների բարեկեցության բարձրացման։

Ընկ. Միկոյանը հատկապես շատ բան է արել հայ ժողովրդի վերածնության, նրա տնտեսության և կուլտուրայի վերելքի համար, հանդիսանալով Ստալինյան նոր հրնգամյակում մեր կարևորագույն արդյունաբերական ձեռնարկությունների շինարարության նախաձեռնողը։ Հայրենական Մեծ պատերազմի տարիներին Հայրենիքին մատուցած աչքի ընկնող ծառայությունների համար ընկեր Միկոյանին շնորհվեց Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի բարձր կոչում։

Հայ ժողովուրդը հպարտ է, որ դեպուտատության իր թեկնածուների թվում ունի լենինյան-ստալինյան տիպի այնպիսի պետական գործիչներ, ինչպես ընկ. Մոլոտովն ու ընկ. Միկոյանը, և ցնծությամբ կտա իր ձայնը նրանց օգտին։

Երևան քաղաքի № 9 երկաթուղային ընտրական օկրուգի ընտրողները փետրվարի 9-ին ձայն կտան Հայաստանի բոլշևիկների ղեկավար, կայուն բոլշևիկ, Լենինի-Ստալինի պարտիայի հավատարիմ զավակ ընկ. Գրիգոր Արտեմի Հարությունյանի օգտին, որի հմուտ



ղեկավարությամբ են ձեռք բերվել Սովետական Հայաստանի նվաճումները արդյունաբերության, գյուղատնտեսության, կուլտուրայի, գիտության և արվեստի բնագավառում։ Նրա եռանդուն ջանքերի շնորհիվ Հայրենական պատերազմի ծանր տարիներին հայ ժողովուրդն է՛լ ավելի սերտորեն համախմբվեց մեր հարազատ պարտիայի շուրջը և պատվով կատարեց իր պարտքը Հայրենիքի հանդեպ։

Էջմիածնի № 262 քաղաքային ընտրական օկրուգում Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածու է գրանցված հայ ժողովրդի պարծանք, Սովետական Միության Հերոս, Մերձբալթյան զինվորական օկրուգի զորքերի հրամանատար, մարտական փառքով պսակված՝ բանակի գեներալ Բաղրամյանը, որի հրամանատարությամբ գործող զորագնդերը Հայրենական Մեծ պատերազմի ճակատներում փայլուն հաղթանակներ տարան ընդդեմ գերմանա-ֆաշիստական զավթիչների։

Լենինականի № 60 Օրջոնիկիձեի ընտրական օկրուգում կոմունիստների և անպարտիականների ստալինյան բլոկը դեպուտատության թեկնածու է առաջադրել Լենինա-

կանի տեքստիլ կոմբինատի մանվածքային գործարանի մանող ցեխի բանվորուհի ընկ. Անգին Արսենյանին։ Ինչի՞ համար է այդպիսի բարձր պատիվ շնորհված համեստ բանվորուհուն,— անձնվիրության, հերոսական աշխատանքի համար։ Պատերազմի ծանր օրերին ընկ. Անգին Արսենյանն առաջինն էր, որ անցավ մանվածքային երկու դազգահի սպասարկման։ Փառապանծ աշխատանքային ուղի է անցել անվանի բանվորուհին, հասնելով արտադրական փայլուն ցուցանիշների։

Կատարելագործվելով իր մասնագիտության մեջ, ընկ. Անգին Արսենյանն այժմ միաժամանակ սպասարկում է երեք դազգահ, աշխատեցնելով 1284 իլիկ։ Ստալինյան նոր հնգամյակի առաջին տարվա պլանը ընկ. Արսենյանը կատարեց 7 ամսում, պլանից ավելի երկրին տալով 7610 մետր թել։

Ոչ միայն Հայկական ՍՍՌ-ում ու Սովետական Միության մեջ, այլև նրա սահմաններից շատ հեռու հայտնի է հայ ժողովրդի տաղանդավոր զավակ, երիտասարդ գիտնական Վ. Համբարձումյանի անունը։ Մեծ են նրա ծառայությունները սովետական առաջավոր գիտության ծաղկման ու բարգավաճ-



ման գործում։ Նա ունի մի քանի տասնյակ գիտական աշխատություններ։ Որպես Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի առաջին վիցե-պրեզիդենտ և այժմ պրեզիդենտ, նա ուժ ու ջանք չի խնայել մեր Ակադեմիան ամրապնդելու և բարձրացնելու համար։ Պաշտպանական նշանակություն ունեցող նրա գյուտերը մեծ ծառայություն մատուցեցին Հայրենական պատերազմում, արժանացնելով նրան Ստալինյան մրցանակի լաուրեատի բարձր պատվին։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատության այդ արժանավոր թեկնածուն առաջադրված է Երևանի Կիրովյան ռայոնի № 43 Աբովյանի ընտրական օկրուգում քվեարկվելու համար։

Երևանի Ստալինյան ռայոնի ՍԿ-ի 3-րդ տեղամասի № 3 ընտրական օկրուգում դեպուտատության թեկնածու է գրանցված անվանի կարբիդագործ բանվոր ընկ. Պատվական Ռուշանյանը։

Ալինի շրջանի № 69 Տավշանղշլաղի ընտրական օկրուգում դեպուտատության թեկնածու է գրանցված հայ անվանի քանաստեղծ, Ստալինյան մրցանակի լաուրեատ, Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիա-

յի իսկական անդամ Ավետիք Իսահակյանը, որի պոետական ձայնը սիրով է լսում Սովետական Հայաստանի աշխատավորությունը։

Երևանի Սպանդարյան ռայոնի № 27 ընտրական օկրուգում իբրև դեպուտատության թեկնածու կքվեարկվի ժողովրդի արժանավոր դուստր, վաստակավոր ուսուցչուհի ընկ. Վարդուշ Նալչաջյանը։ Քսանհինգ տարի նա անխոնջ աշխատում է մանկավարժության շնորհակալ ասպարեզում։ Նրա դաստիարակած սաներից շատերը ներկայումս աշխատում են մեր երկրի կուլտուրայի, գիտության, արվեստի և տնտեսական ու հասարակական կյանքի մյուս բնագավառներում։ Նա վայելում է բոլորի— թե ուսուցիչների, թե աշակերտների հարգանքը։

Արտաշատի շրջանի աշխատավորները դեպուտատության թեկնածու են առաջադրել նույն շրջանի Կարակոյուն գյուղի կոլխոզի առաջավոր օղակավարուհի Հալա Իբադուլա կզի Սալմանովային։ Նրա անունը հայտնի է ամբողջ շրջանում։ Կոլխոզում նա օրինակ է տալիս, թե ինչպես պետք է աշխատել, ինչպես պետք է պահպանել հանրային ու-



նեցվածքը, ինչպես պայքարել բերքատվության բարձրացման համար։ Ընկ. Սալմանովայի օղակն այս տարի ստացել է հեկտարից միջին հաշվով 40 ցենտներ բամբակ, 120 ցենտներ խաղող։

Կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուների թվումն են՝ մեր ռեսպուբլիկայի անվանի ստախանովականներ, բարձր բերքի վարպետներ, գիտության, արվեստի, գրականության և կուլտուրայի ականավոր գործիչներ։ Դեպուտատության թեկնածուներ են գրանցված գիտության վաստակավոր գործիչ, անկուսակցական պրոֆեսոր Ա. Մելիք-Ադամյանը, ստախանովական խառատ Գուրգեն Ղազանչյանը, Հայկական ՍՍՌ ժողովրդակա՛ն արտիստ, Ստալինյան մրցանակի լաուրեատ, արվեստի ականավոր գործիչ Մ. Թավրիզյանը, արտասահմանից հայրենիք վերադարձած՝ ներկայումս Լենինականի մսի կոմբինատի բանվոր Մ. Կարաբաճակյանը, կոլխոզային բարձր բերքի վարպետ Գ. Գասպարյանը և ուրիշներ։

Կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուների մեջ արտացոլված են սովետական ժողովրդի լավագույն հատկությունները՝ ազնվությունը, գործարարությու-

նը, անսահման նվիրվածությունը Հայրենիքին, բոլշևիկյան պարտիային, մեծ Ստալինին։ Կոմունիստների և անկուսակցականների բլոկը վառ կերպով արտացոլում է մեր հասարակության իսկական դեմոկրատական բնույթը, սոցիալիստական կարգերի հզոր, անխորտակելի ուժը։

Հանձին կոմունիստական պարտիայի ժողովուրդը տեսնում է իմաստուն ու հեղինակավոր ղեկավարի, որը գլխավորեց մեր երկրի բանվորների և գյուղացիների ազատագրական պայքարն ընդդեմ կապիտալիստների ու կալվածատերերի, կառուցեց և ամրապնդեց աշխարհում միակ սոցիալիստական պետությունը, մեր երկրի բազմազգ ժողովուրդներին տվեց իսկական ազատություն ու դեմոկրատիա, կառուցեց մեր երկրում սոցիալիզմը։

Գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ մղված Հայրենական պատերազմի տարիներին բոլշևիկների պարտիան ոգեշնչում ու կազմակերպում էր մասսաներին, մոբիլիզացնում էր երկրի բոլոր ռեսուրսները հանուն հաղթանակի, և սովետական մարդիկ կրկին ու կրկին անգամ համոզվեցին, թե որքան ճիշտ ու հեռատես էր պարտիայի ու



սովետական կառավարության քաղաքականությունը երկրի ինդուստրացման ու կոլեկտիվացման, սովետական պետության ռազմական ու տնտեսական հզորության ամրապնդման գործում։

Ուստի ձայն տալով կոմունիստների և անկուսակցականների ստալինյան բլոկի թեկնածուների օգտին, յուրաքանչյուր ընտրող ձայն կտա Լենինի-Ստալինի պարտիայի իմաստուն քաղաքականության օգտին, որը մեր գալիք հաղթանակների ու հետագա ծաղկման երաշխիքն է, ձայն կտա մեր Սովետական կառավարության օգտին, նրա ներքին և արտաքին քաղաքականության օգտին։

Ձայն տալով կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուների օգտին, յուրաքանչյուր ընտրող ձայն կտա մեր սիրելի ուսուցիչ և առաջնորդ, սովետական ժողովրդի բոլոր հաղթանակները կազմակերպող ու ոգեշնչող, հայ ժողովրդի մեծ բարեկամ հարազատ Ստալինի օգտին։

Մեր ռեսպուբլիկայի գերագույն օրգանի ընտրությունների օրը— 1947 թ. փետրվարի 9-ին միահամուռ կերպով ձայն տալով կոմունիստների և անկուսակցականների ստա-

լինյան բլոկի թեկնածուների օգտին, յուրա-
քանչյուր ընտրող ձայն կտա Սովետական
Հայրենիքի հետագա բարգավաճման ու հզո-
րացման օգտին, կոմունիստական հասարա-
կարգի կառուցման օգտին։

Բոլորս դեպի Հայկական ՍՍՌ Գերագույն
Սովետի ընտրությունները։

Մեր ձայնը տանք կոմունիստների և
անկուսակցականների ստալինյան անխորտա-
կելի բլոկի թեկնածուներին։

★ ★ ★



# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՎԵՐԵԼՔԸ

Նախքան սովետական կարգեր հաստատ-
վելը Հայաստանը գտնվում էր տնտեսապես
ու կուլտուրապես շատ ցածր մակարդակի
վրա։ Մեր երկիրը ծայր աստիճան աղքատու-
թյան մեջ ընկավ հատկապես դաշնակցա-
կանների տիրապետության մռայլ տարինե-
րին։ Այդ տարիներին գյուղատնտեսությունը
երկրի ամենահետամնաց ճյուղն էր. հողային
ամբողջ տարածությունների մոտ 60 տոկոսը,
այն էլ ամենաբերքատու հողերը, գտնվում
էր կալվածատերերի, կուլակների ձեռքին։
Գյուղական բնակչության 85 տոկոսը կազ-
մում էր չքավոր գյուղացիությունը։ Գյուղա-
տնտեսության մեջ հիմնական գործիքը ա-
րորն էր, մեքենաներ բոլորովին չկային։
Գյուղացիական տնտեսությունների 40 տո-
կոսը չուներ քաշող ուժ, 25 տոկոսն ընդ-

հանրապետ զուրկ էր ցանցատարածություն֊ներից։

Միայն Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան էր, որ ինչպես Սովետական Միության մյուս ժողովուրդներին, այնպես էլ հայ ժողովրդին բերեց ազատություն և երջանկություն։

Լենինի-Ստալինի մեծ պարտիայի իմաստուն ղեկավարությամբ և եղբայրական ռուս մեծ ժողովրդի օգնությամբ հայ ժողովուրդը փրկվեց անխուսափելի կործանումից։

Սովետական իշխանության տարիներին արդյունաբերության հարաճուն զարգացման հետ միասին ամբողջովին վերափոխվեց Հայաստանի գյուղատնտեսությունը։

Գյուղատնտեսության կոլեկտիվացման լենինյան-ստալինյան պլանի կենսագործումը հնարավորություն տվեց մեր Ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը փոխադրել սոցիալիստական ուղու վրա և ստեղծվեցին նրա զարգացման լայն հեռանկարներ։

Հողագործության հիմնական աշխատանքներն այժմ կատարվում են մեքենաների միջոցով։ Ռեսպուբլիկայի 38 ՄՏ կայանները կատարում են կոլխոզների դաշտային հիմնական աշխատանքների 75-80 տոկոսը։ Հա-



զարավոր տրակտորներ, կոմբայններ, բարդ
կալսիչ մեքենաներ և ուրիշ շատ գյուղատըն-
տեսական մեքենաներ հերկում, ցանում, մը-
շակում են կոլխոզային դաշտերը։

Սովետական իշխանության տարիներին
կառուցված խոշոր ջրանցքների շնորհիվ ջը-
րովի հողերի տարածությունը Ռեսպուբլիկա-
յում հասավ ավելի քան 210 հազար հեկտա-
րի՝ 1919 թ. 60,4 հազար հեկտարի փոխա-
րեն։ 1919 թվականի համեմատությամբ ցան-
քերի տարածությունը ավելացել է 378 հա-
զար հեկտարով, ըստ որում ծխախոտի, շա-
քարի ճակնդեղի, խորդենու կուլտուրաները,
որոնք մեծ արժեք են ներկայացնում մեր
երկրի տնտեսության համար, սկսեցին մը-
շակվել միայն սովետական իշխանության

օրով։

Բարձրացել է մեր կոլխոզային դաշտերի
բերքատվությունը։ 1919 թվականի համեմա-
տությամբ հացահատիկային կուլտուրաների
բերքատվությունը 1946 թվին աճեց հեկ-
տարին 4,6 ցենտներով, կարտոֆիլինը՝ 40,4
ցենտներով, բամբակինը՝ 6 ցենտներով և
այլն։

Հոյակապ խնդիրներ են դրված մեր երկրի
գյուղատնտեսության առջև Ստալինյան նոր

հնգամյակում։ Զգալի չափով ընդարձակվելու են ցանքերի տարածությունները։ 1940 թվականի 432,4 հազար հեկտարից ցանքերի տարածությունը Ռեսպուբլիկայում 1950 թվին հասնելու է 512 հազար հեկտարի։ 1947 թվականի վերջին՝ կոլխոզներում լրիվին ավարտվելու է ցանքաշրջանառության կիրառումը, որը մի կողմից հաջողությամբ կլուծի բերքատվության բարձրացման հարցը, մյուս կողմից սոցիալիստական անասնապահության համար կստեղծի կերի ամուր բազա։

Բավական է նշել, որ 1950 թվականին շընորհիվ ցանքաշրջանառության կիրառման կոլխոզներում ցանովի խոտաբույսերի տարածությունը կհասնի ավելի քան 98 հազար հեկտարի՝ 1940 թվականի 33,4 հազար հեկտարի փոխարեն։

Ցանքերի մշակման ողջ կոմպլեքսը բարելավելու և ցանքաշրջանառությունը կիրառելու հետևանքով զգալիորեն կբարձրանա մեր դաշտերի բերքատվությունը։ Նախատեսվում է 1950 թվականին հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը հասցնել 11,5 ցենտների, բամբակինը՝ 21, շաքարի ճակըն-



դեղինը՝ 200, ծխախոտինը՝ 9, կարտոֆիլինը՝ 105 ցենտների յուրաքանչյուր հեկտարից։

Նոր հնգամյակում բացառիկ ուշադրություն է նվիրվելու այգեգործության զարգացմանը. Նախատեսվում է 20 հազար հեկտարով ավելացնել խաղողի և պտղատու այգիների տարածությունները՝ նոր իրացվող հողերի հաշվին։

Սովետական Հայաստանի կոլխոզային գյուղացիությունը երկրի ողջ աշխատավորության հետ միասին մեծագույն խանդավառությամբ նախապատրաստվում է Ռեսպուբլիկայի Գերագույն Սովետի ընտրություններին։

Քաղաքական հսկայական նշանակություն ունեցող այդ աշխատանքների հետ զուգընթաց կոլխոզային աշխատավորությունը հանրագումարի է բերում 1946 թվականի տնտեսական տարվա արդյունքները։

1946 թվականին, Ստալինյան նոր հնգամյակի առաջին տարում մեծ հաջողությունների հասան մեր Ռեսպուբլիկայի կոլխոզները ցանքերի ընդարձակման, բերքատվության բարձրացման, անասնապահության զարգացման գործում։ Հայաստանի կոլխոզային գյուղացիությունը տնտեսության բոլոր ճյու-

ղերի գծով կատարեց և գերակատարեց 1946
թվականի պլանային առաջադրանքները։ Չը-
նայած անցյալ տարվա գարնան կլիմայա-
կան անբարենպաստ պայմաններին, գարնա-
նացանն ավարտվեց ժամանակին և պլանը
կատարվեց 100,3 տոկոսով։
1946 թվականին, նախորդ տարվա համե-
մատությամբ, Ռեսպուբլիկայի կոլխոզները
6000 հեկտարով ընդարձակեցին ցանքային
տարածությունները։ Բավական խնամքով
կատարվեց ցանքերի մշակումը, 110 տոկո-
սով կատարվեց վաղ և ամռան ցելը, գերա-
կատարվեց խաղողի և պտղատու այգիների
տնկման պլանը։

Չնայած կոլխոզները անցյալ տարի բավա-
կան ուշացումով սկսեցին բերքահավաքի
աշխատանքները անբարենպաստ կլիմայա-
կան պայմանների պատճառով, սակայն նը-
րանք առավելագույն կազմակերպվածու-
թյամբ ավարտեցին բերքահավաքը։
Մեր կոլխոզները առանձնապես առատ
բերք հավաքեցին հացահատիկային կուլտու-
րաներից։ Եթե 1940 թվականին հացահատի-
կային կուլտուրաների յուրաքանչյուր հեկ-
տարի միջին բերքը Ռեսպուբլիկայում կազ-
մում էր 8 ցենտներ, ապա 1946 թվականին



հացահատիկային ցանքերի տարածությունը
ընդարձակվելով ավելի քան 15 հազար հեկ-
տարով, միաժամանակ 1,5 ցենտներով բարձ-
րացավ բերքատվությունը և կազմեց 9,5
ցենտներ։ Կոլխոզները 1946 թվականին 520
հազար ցենտներով ավելի ապրանքային հա-
ցահատիկ ստացան, քան 1940 թվականին։
Հացահատիկային կուլտուրաների բարձր
բերքատվությունը մեր կոլխոզներին հնա-
րավորություն տվեց ժամկետից մեկ ամիս
շուտ և լրիվ կատարել պետությանը հացա-
հատիկ հանձնելու պարտավորությունները։
Կոլխոզները լրացուցիչ կարգով 620 հազար
փութ հացահատիկ հանձնեցին պետությանը,
որից 200 հազար փութը ՄՏ կայանների բը-
նավարձի դիմաց և 420 հազար փութը ա-
զատ գնման կարգով։
Հացահատիկային կուլտուրաների առավել
բարձր բերք ստացան Մարտունու, Նոր Բա-
յազետի, Թալինի, Միկոյանի, Կոտայքի, Աշ-
տարակի և այլ շրջանների կոլխոզները։
Կատարելով պետական պարտավորություն-
ները, ապահովելով աշնանացանի կատա-
րումը, լիովին առանձնացնելով 1947 թվա-
կանի գարնանացանի սերմացուն, Մարտու-
նու, Թալինի, Նոր Բայազետի, Միկոյանի,

Կոտայքի և Աշտարակի շրջանների բազմա-
թիվ կոլխոզներ յուրաքանչյուր աշխօրին
բաշխեցին 3-4 և նույնիսկ 5-6 կիլոգրամ
հացահատիկ, բացի մյուս մթերքներից։

Մեր կոլխոզները ստացան նաև ծխախո-
տի, շաքարի ճակնդեղի, բամբակի, կարտո-
ֆիլի և այլ կուլտուրաների առատ բերք։

Մեր կոլխոզային աշխատավորությունը,
հողային օրգանների և ՄՏ կայանների աշ-
խատողները, պարտիական կազմակերպու-
թյունների ղեկավարությամբ ի պատիվ Հայ-
կական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրու-
թյունների հսկայական աշխատանք են ծա-
վալել նոր հնգամյակի երկրորդ տարվա՝
1947 թվականի գարնանացանը լավագույն
կերպով նախապատրաստելու և այն բարձր
ցուցանիշներով կատարելու համար։

ՄՏ կայանները տրակտորների և կցորդ
մեքենաների նորոգման պլանը կատարել են
ավելի քան 80 տոկոսով և ի պատասխան
Ախտայի ՄՏ կայանի աշխատողների կոչի
պարտավորվել են մինչև փետրվարի 9-ը՝ Գե-
րագույն Սովետի ընտրությունների օրը լրի-
վին ավարտել տրակտորների ու մեքենաների
նորոգումը։ Կոլխոզներում ուժեղ թափով
կատարվում է սերմացուի զտումը և կոնդի-



ցիային համապատասխանեցնելը, նորոգվում
և կարգի են բերվում գյուղատնտեսական
գործիքները, դաշտ է տեղափոխված գոմաղ-
բը։ Կոլխոզները վերանայում են աշխատան-
քի կազմակերպման հարցերը, դասավորում
օղակների, բրիգադաների կազմը։

Կոլխոզային ընդհանուր ժողովներում
քննության են առնվում կոլխոզի տարեկան
հաշվետվությունները, կատարվում են կոլ-
խոզների ղեկավար օրգանների ընտրություն-
ներ։

Բարձր բերքի հիմքը դրվում է գյուղատըն-
տեսական տարում, հատկապես գարնանա-
ցանի լավագույն նախապատրաստումով։
Գործադրենք բոլոր ուժերը՝ կատարելու մեր
պարտիայի Կենտրոնական Կոմիտեի և ան-
ձամբ ընկեր Ստալինի ցուցումները՝ կոլխոզ-
ները 1947 թվականի գյուղատնտեսական
աշխատանքներին անթերի կերպով նախա-
պատրաստելու ուղղությամբ։

Ս. ՂԱԶԱՐՅԱՆ

Հայկական ՍՍՌ հողագործության
մինիստր

## ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԿՈՒԼՏՈՒՐԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

*Մեծ են Սովետական Միության նվաճումները կուլտուրայի ասպարեզում։ Լենինի-Ստալինի պարտիայի գաղափարներով տոգորված մեր սովետական կուլտուրան միակն է աշխարհում։ Նա ամենաառաջավոր կուլտուրան է, որ ճշմարիտ ծառայում է իր ժողովրդին։ Սովետական Միության ժողովուրդները, զինված առաջավոր կուլտուրայով, կառուցում են կոմունիստական հասարակարգ։*

*Մեծ են նաև Սովետական Միության անբաժանելի մասը կազմող Սովետական Հայաստանի նվաճումները կուլտուրայի բնագավառում։*

*Երբեմնի հետամնաց ծայրագավառ, ցարական Ռուսաստանի կիսագաղութ Հայաստանն այժմ դարձել է ծաղկուն երկիր՝ ծաղկող կուլտուրայով։ Սովետական Հայաստա-*



*նը վառ օրինակ է այն բանի, թե ինչպես լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության անշեղ կիրառումը տվեց իր հրաշալի պտուղները—ստեղծված է ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրա։ Միայն սովետական իշխանությունը տվեց հայ ժողովրդի հնադարյան կուլտուրային վերածնման հնարավորություն։*

*Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների նախօրյակին Սովետական Հայաստանի աշխատավորները հպարտությամբ են արձանագրում կուլտուրայի բնագավառում իրենց նվաճումները, որոնք ձեռք են բերվել աշխարհի ամենադեմոկրատական կոնստիտուցիայի՝ Ստալինյան Կոնստիտուցիայի վառ արևի ներքո։*

*Տիրահռչակ դաշնակների թողած մութ ու հետամնաց գյուղի փոխարեն, այժմ Սովետական Հայաստանն ունի նոր գյուղ նոր կուլտուրայով, ուր մուտք են գործել տրակտորը, կոմբայնը, ուր ամուր արմատներ են գցել էլեկտրիֆիկացիան, գիրն ու գրականությունը, կինոն ու թատրոնը։*

*Սոցիալիզմը չէր կարելի կառուցել անգրագետ մարդկանցով, ուստի կոմունիստա-*

կան պարտիան և սովետական իշխանությունը գործ դրեցին ամեն միջոց՝ բնակչության միջից անգրագիտությունը վերացնելու համար։ Եվ Սովետական Հայաստանում նրա գոյության 26 տարիների ընթացքում վերացվեց բնակչության միջից անգրագիտությունը, մինչդեռ նախ քան սովետական կարգեր հաստատվելը, անգրագետները կազմում էին Հայաստանի բնակչության 80 տոկոսից ավելին։ Բացվեցին հարյուրավոր դպրոցներ, տասնյակ տեխնիկումներ և բարձրագույն ուսումնական հաստատություններ։ Ստալինյան Կոնստիտուցիան սովետական քաղաքացու համար ապահովեց կրթության իրավունքը։ Սովետական Հայաստանում յուրաքանչյուր չորս մարդուց մեկը սովորում է։ Եթե 1913 թվականին Հայաստանում կար 446 ծխական և 7 միջնակարգ դպրոց՝ 34 հազար 738 աշակերտով և 1146 ուսուցիչներով, ապա այժմ Սովետական Հայաստանում գործում է 1144 դպրոց, որից 244-ը տարրական, 612-ը յոթնամյա և 288-ը միջնակարգ, ընդամենը 276 հազար աշակերտով։ Բացի դրանից, գործում են 22 բանվոր-երիտասարդության, 216 գյուղական-երիտասարդության, 18 գիշերային դպրոցներ և 10 տեխնիկում։ Մեր



պատանիներին դպրոցներում դաստիարակում են մոտ 12 հազար ուսուցիչներ։

Միայն Երևանում գործում է 49 դպրոց՝ 37 հազար 685 աշակերտով, որտեղ դասավանդում են 1370 ուսուցիչ։ Այժմ միայն Երևանն ունի ավելի շատ աշակերտություն և ուսուցիչներ, քան ուներ 1913 թվականին ամբողջ Հայաստանը։

Սովետական Հայաստանի բյուջեի 40 տոկոսից ավելին հատկացվում է լուսավորությանը։ Սա ակնառու փաստ է, թե կոմունիստական պարտիան և սովետական իշխանությունը որքան են հոգ տանում ժողովրդի լուսավորության համար։

Հայկական ՍՍՌ-ում այժմ գործում է 13 բարձրագույն ուսումնական հաստատություն՝ 14 հազար ուսանողությամբ։ Սովետական իշխանության 26 տարիների ընթացքում Հայաստանի բարձրագույն ուսումնական հաստատությունները տվել են մոտ 12 հազար մասնագետ, իսկ տեխնիկումները՝ 20 հազարից ավելի միջին որակի մասնագետ։

Եթե մինչ սովետական կարգերը գիտության և կուլտուրայի ներկայացուցիչները մեզ մոտ եզակի էին, իսկ գիտություն ձեռք

բերելը հաջողվում էր միայն հարուստների զավակներին, որոնք ոչ միայն չէին ծառայում իրենց ժողովրդին, այլ և նրա դեմ էին գործում, ապա այժմ գիտությունն ու կուլտուրան դարձել են ժողովրդական լայն մասսաների սեփականությունը։ Այժմ մենք ունենք մեր սովետական ինտելիգենցիան, որը ժողովրդի պարծանքն է և սրբությամբ է ծառայում իր ժողովրդին, իր սոցիալիստական Հայրենիքին։

Հայրենական Մեծ պատերազմի ընթացքում, 1943 թվականին, Երևանում կազմակերպվեց Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիան, որն իր շուրջն է համախմբել ավելի քան 500 գիտական աշխատողների։ Ակադեմիային կից գործում են 45 գիտահետազոտական ինստիտուտներ և հիմնարկներ։ Ակադեմիան ունի 22 իսկական անդամ և 12 թղթակից անդամ, որոնցից ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի իսկական անդամ են 4-ը, թղթակից անդամ՝ 3-ը։

Ակադեմիայի պրեզիդենտն է՝ երիտասարդ գիտնական Վ. Համբարձումյանը, որի անունը հայտնի է նաև արտասահմանում։ Կոմունիստների և անկուսակցականների բլոկը նրան առաջադրել է Հայկական ՍՍՌ Գերա-



գույն Սովետի դեպուտատության թեկնածու։

Մենք ունենք գիտության տարբեր բնագավառներում անվանի գիտնականներ, որոնք հայտնի են Սովետական Միության մեջ և նրա սահմաններից դուրս։ Դրանք են՝ Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի իսկական անդամներ՝ Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Լ. Օրբելին՝ ֆիզիոլոգիայի գծով, Հ. Օրբելին՝ արևելագիտության գծով, Հ. Մանանդյանը՝ պատմության գծով, Ա. Ալիխանյանը և Ա. Ալիխանովը՝ էքսպերիմենտալ ֆիզիկայի գծով, Հ. Աճառյանը՝ լեզվաբանության գծով և ուրիշներ։

Ամբողջ Միության մեջ հումանիտար գիտությունների գծով 1943-1944 թ. թ. համար անցյալ տարի շնորհված Ստալինյան երկու մրցանակներն ստացան Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի անդամներ Ստ. Մալխասյանը և Բ. Պիոտրովսկին։

Աննախընթաց բարձրության են հասել Սովետական Հայաստանի գրականությունը և արվեստը։ Սովետական իշխանության տարիների ընթացքում մեր գրողները և բանաստեղծները տվել են մի շարք լուրջ ստեղծագործություններ—վեպեր, պոեմներ, դրամատիկական երկեր, որոնք ծառայում են

ժողովրդի դաստիարակությանը կոմունիստական ոգով, նրա իդեական-կուլտուրական մակարդակի բարձրացմանը։ Մենք ունենք գրողների, բանաստեղծների և արվեստագետների հրաշալի մի սերունդ։ Հայ ականավոր բանաստեղծ, Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի իսկական անդամ Ավ. Իսահակյանը, որը Հայաստանի Սովետական Գրողների Միության նախագահն է, առաջադրված է Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածու։ Նորից դեպուտատության թեկնածու է առաջադրված բազմավաստակ գրող Արազին։ Անցյալ տարի տեղի ունեցած ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների ժամանակ հայ ժողովուրդը ՍՍՌ Միության Գերագույն Սովետի դեպուտատ ընտրեց սիրված բանաստեղծ Գեղամ Սարյանին։

Խոշոր և պատվավոր է մեր թատրոնի խնդիրը աշխատավորական լայն մասսաներին կոմունիզմի ոգով դաստիարակելու գործում։ Մենք ունենք առաջնակարգ թատրոններ՝ անվանի արտիստներով։ Երևանի Սունդուկյանի անվան պետական թատրոնը և Սպենդիարովի անվան օպերայի ու բալետի պետական թատրոնը Սովետական Միության



լավագույն թատրոններից են։ Միայն Երևանում գործում են 8 թատրոն, Լենինականում մեկը և շրջաններում 20 թատրոն։ Ալավերդու շրջանում գործում է քրդական թատրոն, որը միակն է ամբողջ աշխարհում։

Հինգ տարվա ընթացքում (1941-1946 թ. թ.) Երևանի թատրոններում բեմադրվել է 8856 ներկայացում, որ դիտել են ավելի քան 3 միլիոն հանդիսատեսներ։ Նույն ժամանակամիջոցում շրջաններում տրվել է 11 հազար 353 ներկայացում, որ դիտել են 2 միլիոն 97 հազար հանդիսատեսներ։

Տեղին է մատնանշել, որ դաշնակների տխրահռչակ տիրապետության շրջանում Հայաստանում չի եղել և ոչ մի պետական թատրոն։

Միայն Երևանի արտիստների թվում կան Ստալինյան մրցանակի 12 լաուրեատ, 30 ժողովրդական արտիստ, 84 վաստակավոր արտիստ։ Ստալինյան մրցանակի լաուրեատներ Վ. Վաղարշյանը, Շ. Տոլյանը, Մ. Թավրիզյանը, Հայկական ՍՍՌ ժողովրդական արտիստ Գ. Մալյանը, արվեստի վաստակավոր գործիչ Վ. Վարդանյանը Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածուներ են առաջադրված։

Կինոն, արվեստի այդ կարևոր բնագավառը, լայն տարածում է գտել մեզանում։ Հայկական ՍՍՌ-ում գործում են 104 հնչուն կինո և 18 համր կինո։ Միայն Երևանում գործում են երեք մշտական, երկու սեզոնային և մեկ շրջիկ հնչուն կինոներ։ Երևանում երեք տարվա ընթացքում (1944-1946 թ. թ.) կինո են հաճախել 4 միլիոն 387 հազար մարդ, իսկ շրջաններում՝ 3 միլիոն 617 հազար մարդ։ Մինչդեռ նախ քան սովետական իշխանության հաստատվելը կային միայն երկու համր կինո՝ Երևանում և Ալեքսանդրապոլում (այժմ Լենինական), այն էլ գործում էին անկանոն։

Սովետական իշխանության տարիներին Երևանում ստեղծվեց կինոստուդիա, որը բաց է թողել սեփական արտադրության 57 կինոնկար։

Հնգամյակի ընթացքում Հայկական ՍՍՌ կինեմատոգրաֆիայի մինիստրությունը տարբեր շրջաններում բաց է անելու 278 հնչուն կինո։

Աշխատավորների քաղաքական դաստիարակության գործում մեծ է բոլշևիկյան մամուլի դերը, որպես մասսաների կոլեկտիվ ագիտատոր, պրոպագանդիստ և կազմակեր-



պիչ։ Սովետական Հայաստանում այժմ լույս է տեսնում 52 անուն թերթ և 5 անուն ժուռնալ՝ 182 հազարից ավելի ընդհանուր տիրաժով։ Հայկական ՍՍՌ-ի բոլոր շրջաններն ունեն իրենց շրջանային թերթերը։

Հայպետհրատը հինգ տարվա ընթացքում (1941-1946 թ. թ.) հրատարակել է 2281 անուն գրականություն՝ ավելի քան 19 միլիոն տիրաժով։

Խոշոր իրադարձություն հանդիսացավ անցյալ տարի ընկեր Ստալինի երկերի առաջին հատորի հայերեն լեզվով հրատարակումը 20 հազար տիրաժով։

Շուտով երրորդ հրատարակությամբ լույս կտեսնի «ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթացը» 100 հազար տիրաժով։

Հայկական ՍՍՌ-ն ունի ռադիոյի լայն ցանց։ Երևանի ռադիոհաղորդման կայանին լսում են ոչ միայն Սովետական Միության մեջ, այլև նրա սահմաններից դուրս։ Աշխարհով մեկ սփռված հայերը հուզմունքով են լսում իրենց հայրենիքի ձայնը, նրա դյութիչ երաժշտությունը, հաղորդումները Սովետական Միության և Սովետական Հայաստանի հաջողությունների ու բարգավաճման մասին։

Ներկայումս ռադիոֆիկացիայի է են-

Թարկված ռեսպուբլիկայի 301 բնակավայր։ Հայկական ՍՍՌ-ում կա 36 հազարից ավելի ռադիոտրանսլյացիոն կետ։ Բոլոր շրջանային կենտրոններում կան ռադիոհանգույցներ, որոնց միջոցով տեղական ռադիոհաղորդումներ են կազմակերպվում։

Երևանի հզոր ռադիոկայանի միջոցով Հայաստանի աշխատավորներն ամեն օր լսում են իրենց հարազատ և սիրելի Մոսկվային, որի անունը թանկ է ամեն մի սովետական քաղաքացու համար։

Սովետական իշխանության տարիներին Հայկական ՍՍՌ-ում ստեղծվեց գյուղական և քաղաքային ակումբների, գրադարանների, կուլտուրայի տների խիտ ցանց։ Ներկայումս գործում են 1091 գյուղական և քաղաքային ակումբ, 850 գրադարան, 30 կուլտուրայի տուն։ Սեփական ռադիոընդունիչներ ունեն 1000 ակումբ։ Երևանի Մյասնիկյանի անվան հանրային գրադարանը, որը Սովետական Միության խոշորագույն գրադարաններից մեկն է, ունի 2 միլիոն 65 հազար կտոր գիրք։

Միայն 1946 թվականի ընթացքում կազմակերպվել է 89 գյուղական ակումբ, 11 կուլտուրայի տուն, 44 գյուղական գրադա-



րան, շահագործման է հանձնվել ակումբի 23 նոր շենք։

Հայկական ՍՍՌ-ումն է գտնվում համաշխարհային հռչակ վայելող Մատենադարանը, իր հազվագյուտ հին ձեռագրերով։

Մեծ չափով ընդարձակվել է Հայկական ՍՍՌ-ում առողջապահական հիմնարկների ցանցը, բարելավվել է նրանց աշխատանքի որակը, աճել են բժշկական կադրերը, որի շնորհիվ մեզանում վերացել են համաճարակային հիվանդությունները, էլ ավելի մեծ հոգատարություն է ցույց տրվում սովետական քաղաքացուն։

Հայկական ՍՍՌ-ում այժմ կա 1452 բժիշկ։ Միայն Երևանն ունի 680 բժիշկ։ Յուրաքանչյուր շրջանում միջին թվով կա 15-25 բժիշկ։ Հայկական ՍՍՌ-ում հիվանդանոցային մահճակալների թիվը հասնում է 5000-ի, մսուրային մահճակալներինը՝ 5.200-ի, սանատորիական մահճակալներինը՝ 1120-ի։ Միայն քաղաքներում կա 74 դեղատուն։

Երևանի Բժշկական ինստիտուտը 1926-ից

մինչև 1946 թվականը տվել է 1710 շրջանավարտ բժիշկ։

1913 թվականին Հայաստանում կար միայն 48 բժիշկ, իսկ հիվանդանոցներն ունեին 213 մահճակալ։ Այժմ միայն Կիրովականն ունի 43 բժիշկ, 280 հիվանդանոցային մահճակալ։ Սովետական Հայաստանն այժմ ունի ռեզորայքի արտադրություն։

Միայն սովետական կարգերը կարող էին տալ Հայաստանին կուլտուրայի այսպիսի զարգացում։ Հայկական ՍՍՌ-ն գիտության և կուլտուրայի ասպարեզում է՛լ ավելի խոշոր նվաճումների կհասնի Ստալինյան նոր հնգամյակում։ Սովետական ժողովրդի մեծ առաջնորդ ընկեր Ստալինը գիտության աշխատողների առջև խնդիր դրեց. «...մոտիկ ժամանակներս ո՛չ միայն հասնել, այլև անցնել մեր երկրի սահմաններից դուրս գիտության ունեցած նվաճումներից»։

Սովետական Հայաստանի գիտության և կուլտուրայի ֆրոնտի աշխատողները զինված «Զվեզդա» և «Լենինգրադ» ժուռնալների, դրամատիկ թատրոնների ռեպերտուարի ու նրա բարելավման միջոցների, «Մեծ կյանք» կինոնկարի մասին ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշումներով, ձեռք կբերեն նորանոր նվաճումներ։

---

# ՆՎԻՐԱԿԱՆ ԻՂՁԵՐԻ ԿԵՆՍԱԳՈՐԾՈՒՄԸ

Դարավոր հալածանքների ու ճնշման, թուրքական սուլթանական իշխանությունների կազմակերպած ջարդերի ու կոտորածների հետևանքով հարյուրամյակների ընթացքում հայ ժողովրդի հսկայական մասսաներ թողին հայրենի հողերն ու օջախը և ցիրուցան եղան ամբողջ աշխարհով մեկ, իրենց ֆիզիկական գոյությունը պահպանելու համար։ Արտասահմանյան երկրներում ներկայումս ապրում են հարյուր հազարավոր հայեր, մեծ մասամբ զուրկ տարրական քաղաքական իրավունքներից, նյութական ծայրահեղ ծանր դրության մեջ։

Հայ ժողովրդի մյուս մասը՝ ընդմիշտ կապելով իր բախտը ռուս մեծ ժողովրդի հետ, նրա եղբայրական օգնությամբ, Լենին-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ

կանգնելով սոցիալիստական զարգացման ուղու վրա, վերականգնեց դարեր առաջ կորցրած իր պետական ինքնուրույնությունը և ներկայումս Սովետական Միության ժողովուրդների համերաշխ ընտանիքում կառուցում է իր նոր, երջանիկ կյանքը։

Արտասահմանյան հայերի ճնշող մեծամասնությունը Սովետական Հայաստանի օրինակով ակնբախորեն համոզվեց, որ «միայն Սովետական իշխանության գաղափարը Հայաստանի համար բերեց խաղաղություն և ազգային վերածննդի հնարավորություն» (Ստալին)։ Արտասահմանում բնակվող հայերը քաջ գիտակցեցին, որ միայն իրենց իսկական Հայրենիքում՝ Սովետական Հայաստանում իրենք կարող են գտնել իրենց կորցրած օջախը, որ միայն Սովետական Հայաստանում նրանց համար կապահովվի ազատ, ստեղծարար աշխատանքը, իրենց լուսավոր ապագան։

Հայրենական պատերազմի հաղթական ավարտումից հետո, որն անչափ բարձրացրեց Սովետական Միության միջազգային հեղինակությունը, է՛լ ավելի ուժեղացավ արտասահմանյան հայերի ձգտումը՝ վերադառ-



նալու Սովետական Հայաստան և անմիջականորեն մասնակցելու հայրենի երկրի շինարարության ու ծաղկմանը։

Ընդառաջելով այդ ցանկություններին և հաշվի առնելով Հայկական ՍՍՌ Կառավարության միջնորդությունը, ՍՍՌ Միության Կառավարությունը 1945 թվականի նոյեմբերի 21-ի որոշմամբ թույլատրեց Սովետական Հայաստան վերադառնալ արտասահմանյան երկրներում ապրող և հայրենիք վերադառնալու ցանկություն ունեցող հայերին։

Սովետական կառավարության պատմական որոշումը ցնծությամբ ընդունվեց արտասահմանյան հայերի կողմից, որոնք իրենց ամենախոր երախտագիտությունն էին արտահայտում Սովետական կառավարությանը և հայ ժողովրդի լավագույն բարեկամ մեծ Ստալինին, որն օգնության եղբայրական ձեռք մեկնեց օտարության մեջ տառապող հայերին, սկիզբ դնելով հայ ժողովրդի վերամիավորմանը։

Միևնույն ժամանակ Հայկական ՍՍՌ Կառավարությունը մեծ աշխատանք ծավալեց արտասահմանից վերադարձող հայերին ընդունելու և տեղավորելու համար։

Բավական կարճ ժամանակամիջոցում Սո-

վետական Հայաստան վերադարձան մոտ 51 հազար հայեր՝ Իրանից, Սիրիայից, Լիբանանից, Հունաստանից, Բուլղարիայից և Ռումինիայից։

Ներգաղթող հայերն անմիջապես տեղավորվում էին Հայաստանի քաղաքներում, շրջանային կենտրոններում և գյուղական վայրերում։ Նրանց մի զգալի մասը տեղավորվեց ռեսպուբլիկայի մայրաքաղաք Երևանում։

Ամենալուրջ ուշադրություն նվիրվեց ներգաղթածներին անհապաղ աշխատանքի տեղավորելու գործին։ Բոլոր աշխատունակ ներգաղթածները, որոնց թիվը 20 հազարից ավելի էր և որոնց մեծամասնությունն արտասահմանում ամիսներ ու տարիներ շարունակ տառապում էր գործազրկությունից, հենց առաջին մի քանի օրվա ընթացքում աշխատանքի տեղավորվեցին արդյունաբերական ձեռնարկություններում, շինարարություններում, արհեստագործական կոոպերացիայի արտելներում, գյուղատնտեսության մեջ և կուլտուր-լուսավորական հիմնարկներում։ Այստեղ նրանք, կյանքում առաջին անգամ ստանալով ոչ թե ուրիշի, այլ իրենց համար, ի բարօրություն իրենց Հայրենիքի,



ազատ աշխատելու հնարավորություն, առաջին իսկ օրերից դարձան սոցիալիստական շինարարության ակտիվ մասնակիցներ, պայքարելով Ստալինյան նոր հնգամյակի հոյակապ խնդիրների կատարման համար։ Կոլխոզային դաշտերում ու այգիներում, անասնապահական ֆերմաներում նրանք, իբրև մեր կոլխոզների լիիրավ անդամներ, իրենց աշխատանքը ներդնում են մեր երկրի հետագա ծաղկման ընդհանուր գործի համար։ Նրանցից շատերը ցույց են տալիս ստախանովյան աշխատանքի օրինակներ, և ներգաղթածների մեջ քիչ չեն այնպիսի կոլխոզնիկներ, որոնք կարճ ժամանակում իրենց ազնիվ աշխատանքով արդեն վաստակել են 150-250 աշխօր։

Ներկայումս ռեսպուբլիկայում համարյա թե չկա ոչ մի քիչ թե շատ խոշոր ձեռնարկություն, որտեղ չաշխատեն ներգաղթած հայեր։ Նրանցից շատերն իրենց անձնվեր աշխատանքի շնորհիվ արդեն արժանի հեղինակություն ու հարգանք են նվաճել արտադրության մեջ, արտադրանքի նորմաները կատարելով 200-300 և ավելի տոկոսով։

Ներգաղթածների մեջ նաև կան զգալի թվով ինտելիգենցիայի ներկայացուցիչներ՝

ուսուցիչներ, բժիշկներ, նկարիչներ, ինժեներներ, գրողներ և այլն, որոնք կյանքում առաջին անգամ հնարավորություն են ստացել իրենց գիտելիքներն օգտագործել հօգուտ հարազատ ժողովրդի։ Դրանք եռանդուն աշխատում են Ռեսպուբլիկայի ձեռնարկություններում, հիմնարկներում և գիտական կազմակերպություններում։ Այսպես օրինակ, հայրենիք վերադարձած ականավոր գիտնական, դոկտոր Տեր-Կարապետյանն աշխատում է Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիայում, որտեղ նա ղեկավարելու է նոր սարքավորվող՝ սպիտակուցների ու ֆերմենտների լաբորատորիան։

Հայրենիք վերադարձած հայերի բոլոր դպրոցական հասակի երեխաները, թվով մոտ 6.800 մարդ, տեղավորված են Ռեսպուբլիկայի տարրական և միջնակարգ դպրոցներում։ Ավելի քան 650 ներգաղթած պատանիներ սովորում են աշխատանքային ռեզերվների սիստեմում՝ ֆաբգործուսի դպրոցներում և արհեստագործական ուսումնարաններում, որտեղ նրանք փորձված մանկավարժների ու վարպետների հսկողությամբ տիրապետում են առաջատար արտադրական մասնագիտությունների։



Մոտ 200 ներգաղթած երիտասարդներ ընդունվել են Երևանի Պետական համալսարանը և այլ բարձրագույն ուսումնական հաստատություններ։ Հայրենիքում նրանք կկարողանան իրագործել իրենց նվիրական իղձը—ստանալ բարձրագույն կրթություն։ Մոտ 6500 մարդ ներգրավված են անգրագիտության վերացման խմբակներում։

Կառավարության լայն աջակցությամբ մեծ թվով հայրենադարձած հայեր ծավալել են անհատական բնակարանային շինարարություն, որի համար յուրաքանչյուր ընտանիք ստանում է հողամաս և քաղաքներում 30 հազար ռուբլի, իսկ գյուղական վայրերում՝ 25.000 ռուբլի պետական վարկ 15 տարի ժամանակով։ Բացի այդ, նրանց ցույց է տրվում օգնություն տրանսպորտով և շինանյութերով։ Արդեն շինարարական հողամաս են ստացել 1600 ընտանիք, որոնցից 1270-ը սկսել են բնակարանների կառուցումը։

Կառավարությունը ներգաղթածներից կարիքավորներին ցույց է տալիս զգալի նյութական օգնություն հագուստով, ոտնամանով, սննդամթերքներով ու դրամով։

Ռեսպուբլիկան պատրաստվում է 1947 թվականին ընդունելու արտասահմանյան

հայերի նոր խմբեր։ Նրանց համար կառուցվում են երեք նոր ավան։ Տներ են կառուցում շատ գաղթակայություններ ու ձեռնարկություններ, ինչպես նաև սովխոզներն ու կոլխոզները։

***

Մոտենում է Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների օրը։ Հայրենիք վերադարձած հայերը, որոնց մեծամասնությունն արտասահմանում զուրկ էր տարրական քաղաքական իրավունքներից, Հայրենիքում առաջին անգամ, ամբողջ սովետական ժողովրդի հետ միասին, իբրև լիիրավ սովետական քաղաքացիներ, կմասնակցեն երկրի պետական իշխանության բարձրագույն օրգանի ընտրություններին։ Ներգաղթածներից շատերը օկրուգային ու տեղամասային ընտրական հանձնաժողովների անդամներ են և ակտիվ աշխատում են ընտրությունների գծով։

Հայաստանի աշխատավորությունը հըսկայական ոգևորությամբ նախապատրաստվելով Ռեսպուբլիկայի գերագույն օրգանի ընտրություններին, մեր երկրի լավագույն մարդկանց թվում Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածու



է առաջադրել նաև ներգաղթած հայերից երեք մարդու, որոնք իրենց ազնիվ աշխատանքով արդեն ապացուցել են իրենց նվիրվածությունը մեր մեծ Հայրենիքին և արժանացել են ժողովրդի վստահությանը։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածու են առաջադրված Լիբանանից վերադարձած հասարակական գործիչ բժիշկ Գևորգ Մանուշակյանը, Արտաշատի շրջանի կոլխոզնիկ Մաթևոս Խաչատրյանը, որ վերադարձել է Իրանից և Լենինականի մսի կոմբինատի բանվոր Մարտիրոս Կարաբաճակյանը, որ եկել է Սիրիայից։

Երեկվա տարագիր հայերը, որոնք իրավազուրկ, խղճուկ գոյություն էին քարշ տալիս օտարության մեջ, այսօր արժանանում են բարձր պատվի՝ Ռեսպուբլիկայի Գերագույն Սովետում ժողովրդի ընտրյալը լինելու։ Կարելի՞ է արդյոք բերել ավելի պայծառ մի վկայություն, ցույց տալու համար, թե յուրաքանչյուր ազնիվ ներգաղթածի առջև ինչպիսի լայն հնարավորություններ են բացվում իսկական դեմոկրատիզմի մեր երկրում։

Անցյալ տարի կատարված ներգաղթը ակնբախորեն ցույց տվեց ամբողջ աշխարհին, որ

միայն սոցիալիստական սիստեմի օրով, սովետական հասարակարգի պայմաններում կարող էր իրագործվել այնպիսի մի լուրջ ձեռնարկում, ինչպիսին է բնակչության մեծ մասսաների վերադարձը Հայրենիք։

Արտասահմանում բնակվող աշխատավոր հայերի նվիրական իղձերի կենսագործումը, ամբողջ հայ ժողովրդի վերամիավորումը է՛լ ավելի սերտորեն է համախմբում նրանց իրենց իսկական ու միակ հայրենիքի՝ Սովետական Հայաստանի շուրջը, աշխարհում ամենադեմոկրատական պետության՝ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության շուրջը, որին դեպի նորանոր հաղթանակներ է առաջնորդում մարդկության հանճար մեծ Ստալինը։

Բ. ԱՍՏՎԱԾԱՏՐՅԱՆ
Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին կից Ներգաղթող հայերի ընդունման ու տեղավորման կոմիտեի նախագահ

—✪—

ԶՐՈՒՅՑ ՔՎԵԱՐԿՈՒԹՅԱՆ ԿԱՐԳԻ ՄԱՍԻՆ

## Ի՞Ն2 ՊԵՏՔ Է ԳԻՏԵՆԱ ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ԸՆՏՐՈՂ

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունները տեղի կունենան ամբողջ Հայկական ՍՍՌ-ի համար մեկ ընդհանուր ոչաշխատանքային օր—1947 թվականի փետրվարի 9-ի կիրակի օրը։ Այս ամսաթիվը պետք է գիտենա և հիշի յուրաքանչյուր ընտրող։

Քվեարկությունը կսկսվի փետրվարի 9-ի կիրակի օրվա առավոտյան ժամը 6-ից և կշարունակվի մինչև գիշերվա ժամը 12-ը։ Ընտրությունների օրը առավոտյան ուղիղ ժամը 6-ին տեղամասային ընտրական հանձնաժողովի նախագահը հանձնաժողովի անդամների ներկայությամբ ճշտելով ընտրողների ցուցակների առկայությունը, ստուգելով և ընտրական հանձնաժողովի կնիքով կնքելով քվեատուփերը, ընտրողներին հրավիրում է սկսելու քվեարկությունը։

Ընտրական բյուլետենների ընդունումը կատարվում է 18 ժամվա ընթացքում: Այդ հնարավորություն է տալիս յուրաքանչյուր ընտրողին իր քվեն տալու օրվա ընթացքում իրեն համար, ցանկացած ժամին:

Տեղամասային ընտրական հանձնաժողովներն իրավունք չունեն գիշերվա ժամը 12-ից շուտ ավարտված հայտարարելու քվեարկությունը, եթե նույնիսկ մինչև այդ ժամը քվեարկության ցուցակով բոլոր ընտրողները արդեն տված լինեն իրենց ձայնը, որովհետև վերջին րոպեին կարող են ներկայանալ ընտրողներ՝ «Քվեարկության իրավունքի վկայականով»:

Յուրաքանչյուր ընտրող կարող է քվե տալ միայն անձամբ, դրա համար ներկայանալով ընտրական տեղամաս՝ քվեարկության շենքը և իր հետ ունենալով կամ անձնագիրը, կամ կոլխոզային գրքույկը, կամ պրոֆմիութենական տոմսը, կամ անձնավորությունը հաստատող որևէ այլ վկայական:

Կլինեն առանձին ընտրողներ՝ զառամյալներ, հաշմանդամներ, որոնք ֆիզիկապես ի վիճակի չեն առանց կողմնակի օգնության



գալու ընտրական տեղամաս: Այդպիսի ընտրողներին քվեարկության շենքը փոխադրելու համար տեղական Սովետների գործկոմները, ձեռնարկությունները, կոլխոզները պետք է ընտրությունների օրը տրամադրեն փոխադրական միջոց: Փոքրահասակ երեխաներ ունեցող կանանց, որոնք չեն կարող երեխաներին մենակ թողնել տանը, օգնություն է գալիս սովետական հասարակայնությունը: Ակտիվիստները կարող են խնամել երեխաներին, մինչև նրանց մայրը կվերադառնա ընտրական տեղամասից: Իսկ շատ ընտրական տեղամասերին կից ստեղծվում են մանկական սենյակներ:

Ներկայանալով քվեարկության շենքը, ընտրողը տեղամասային ընտրական հանձնաժողովի քարտուղարին կամ նրա լիազորված անդամին է ներկայացնում իր անձնավորությունը հաստատող վկայական և, ընտրողների ցուցակով ստուգվելուց ու ցուցակում նշում կատարվելուց հետո, ստանում է սահմանված ձևի ընտրական բյուլետեն:

Ստանալով ընտրական բյուլետենը,

քվեարկողը մտնում է բյուլետենները լրացնելու համար հատկացված սենյակը։

Սովետական ընտրական օրենքը սահմանում է ընտրական բյուլետենների ընդունման այնպիսի կարգ, երբ պահպանվում է քվեարկության լիակատար գաղտնիությունը։

Բյուլետենները լրացնելու համար ընտրությունների շենքում առանձնացվում է հատուկ սենյակ։ Քվեարկության ժամանակ արգելվում է այդ սենյակում որևէ մեկի, այդ թվում նաև տեղամասային ընտրական հանձնաժողովի անդամների ներկայությունը, բացի քվեարկողներից։ Եթե բյուլետենները լրացնելու սենյակը միաժամանակ ներս են թողնվում մի քանի ընտրող, ապա այնտեղ պետք է պատրաստված լինեն միջնապատեր, միաժամանակ ներս թողնվող ընտրողների թվի համեմատ։

Քանի որ յուրաքանչյուր քաղաքացի ընտրությունների ժամանակ ունի մեկ ձայն, նա կարող է ձայն տալ միայն մեկ դեպուտատի։ Ուստի քվեարկողը ընտրական բյուլետենի մեջ պետք է թողնի այն թեկնածուի ազգանունը, որի օգտին ինքը ձայն է տալիս։ Այն բյուլետենները, որոնց մեջ թողնված կլինեն



մեկ թեկնածուից ավելի, ինչպես նաև ոչ սահմանված ձևի բյուլետենները, անվավեր են ճանաչվում։

Կլինեն ընտրողներ, որոնք անգրագիտության կամ որևէ ֆիզիկական պակասության հետևանքով ի վիճակի չեն ինքնուրույն կերպով լրացնելու ընտրական բյուլետենը։ Այդպիսիք կարող են քվեարկության սենյակը հրավիրել ընտրողներից որևէ մեկին։ Հրավիրված ընտրողը պետք է ընտրական բյուլետենը լրացնի այնպես, ինչպես այդ կցանկանա նրան հրավիրողը։

Ընտրողներն իրենց քվեն տալիս են ընտրական բյուլետենը քվեատուփի մեջ իջեցնելու միջոցով։

Ընտրական բյուլետենը լրացնելուց հետո, քվեարկողը մտնում է այն սենյակը, ուր տեղամասային ընտրական հանձնաժողովն է գտնվում, և բյուլետենը, ծալած վիճակում, իջեցնում է քվեատուփի մեջ։

«Քվեարկության իրավունքի վկայականով» քվեարկող անձինք տեղամասային ընտրական հանձնաժողովի կողմից մտցվում են ընտրողների ցուցակի մեջ, որն ստորագրվում է տեղամասային ընտրական հանձնաժողովի

նախագահի և քարտուղարի կողմից։ Ներկայացնելով անձնավորությունը հաստատող վկայական և հանձնաժողովին հանձնելով «Քվեարկության իրավունքի վկայականը», ընտրողն ստանում է ընտրական բյուլետեն և ընդհանուր կարգով մասնակցում է քվեարկությանը։

Հիվանդների մոտ, նրանց խնդրանքով, տեղամասային ընտրական հանձնաժողովը պետք է ուղարկի հանձնաժողովի անդամներից մեկին կամ տեղամասային ընտրական հանձնաժողովի կողմից այդ բանի համար հատկապես լիազորված մարդու, որպեսզի հիվանդը կարողանա քվեարկել անմիջականորեն տանը։ Այդպիսի դեպքերում ընտրական բյուլետենը պետք է իջեցվի հատուկ քվետուփի մեջ։

Ընտրությունների ժամանակ ժողովրդի կամքի լիակատար ու ազատ արտահայտումն ապահովելու նպատակով սովետական օրենքը թույլ չի տալիս ընտրությունների համար հատկացված շենքում քվեարկության ժամանակ ընտրական ագիտացիա անել։ Ընտրությունների շենքում կարգ ու կանոնի համար պատասխանատվություն է



կրում տեղամասային ընտրական հանձնաժողովի նախագահը և նրա կարգադրությունները պարտադիր են բոլոր ներկա գտնվողների համար։

Գիշերվա ժամը 12-ին տեղամասային ընտրական հանձնաժողովի նախագահը քվեարկությունը հայտարարում է ավարտված, և հանձնաժողովն անցնում է քվետուփերը բանալուն ու քվեարկության արդյունքները որոշելուն։

Սովետական օրենքը խստիվ պաշտպանում է քաղաքացիների ընտրական իրավունքները։ Յուրաքանչյուր ոք, ով բռնության, խաբեության, սպառնալիքի, կաշառման միջոցով կամ այլ եղանակով խոչընդոտ կհանդիսանա Հայկական ՍՍՌ քաղաքացուն՝ ազատ կերպով իրականացնել Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ ընտրելու կամ ընտրվելու իր իրավունքը, պատժվում է ազատազրկմամբ մինչև երկու տարի ժամանակով։

Մեր երկրում, որտեղ ժողովուրդը ոչ միայն քվեարկում է, այլ և ինքն է կազմակերպում ընտրությունների անցկացումը, լրիվ չափով ապահովված է իրոք ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքը՝

գաղտնի քվեարկությամբ: Սահմանված է ընտրությունների այնպիսի կարգ, որը բոլոր քաղաքացիներին հնարավորություն է տալիս իրագործելու պետական իշխանության գերագույն օրգանի ընտրության իրենց իրավունքը:

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների օրը՝ 1947 թվականի փետրվարի 9-ը կհանդիսանա մեր ժողովրդի բարոյական-քաղաքական միասնության, Լենինի-Ստալինի պարտիայի և սովետական կառավարության շուրջը նրա սերտ համախմբվածության ցուցադրման օր:

—о—

Պատասխանատու խմբագիր՝
Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

